Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## 2

ՀՈՒՆՎԱՐ 1961



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Խ. ՍԱՐԳՍՅԱՆ

Նոր տարվա շեմքին տեղի ունեցավ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի հինգերորդ գումարման չորրորդ սեսիան, որը քննարկեց և հաստատեց Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման 1961 թվականի Պետական պլանը և Պետական բյուջեն։

Գերագույն Սովետի սեսիայի կողմից հաստատված 1961 թվականի ժողովրդա-տնտեսական պլանը և Պետական բյուջեն նոր, հզոր ազդակ կհանդիսանան մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի, աշխատավորների նյութական բարեկեցության մակարդակի հետագա էլ ավելի բարձրացման գործում։

1960 թվականը մեր ռեսպուբլիկային նոր և նշանակալից հաջողություններ բերեց։

Յոթնամյակի առաջին երկու տարվա ընթացքում արդյունաբերական արտադրանքի աճը հասավ 23,8 տոկոսի։

Արդյունաբերական արտադրանքը 1959 թվականի համեմատությամբ ավելացավ 12,4 տոկոսով։ Հայաստանը «բարեկամության տրասսայով» եղբայրական Ադրբեջանից ստացավ բնական գազ, որը իսկական հեղաշրջում առաջ կբերի ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման մեջ։ Զգալի հաջողությունների են հասել ռեսպուբլիկայի արդյունաբերության առաջատար ճյուղերը։ Քիմիական արդյունաբերության արտադրանքն աճել է 15, գունավոր մետալուրգիայինը՝ 17, մեքենաշինությանը՝ 38 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականությունը աճել է 6 տոկոսով՝ նախատեսված 4 տոկոսի փոխարեն, իջել է արտադրանքի ինքնարժեքը։

Լավ արդյունքների են հասել նաև ռեսպուբլիկայի կոլտնտեսականները, հատկապես բամբակագործները և ճակնդեղագործները, որոնք արդեն 1960 թվականին գերազանցեցին յոթնամյակի վերջին տարվա՝ 1965 թվականի համար նախատեսված մակարդակը։ Բամբակի հումքի արտադրանքը մեկ հեկտարից 1960 թվականին կազմեց





26,4 ցենտներ, որը ամենաբարձր ցուցանիշն է նախորդ բոլոր տարիների համեմատությամբ։ Բամբակագործները երկրին տվին 36,6 հազար տոննա բամբակի հումք, 1965 թվականի համար նախատեսված 35 հազար տոննայի դիմաց։ 1960 թվականին պետությանը հանձնվեց 110,4 հազար տոննա շաքարի ճակնդեղ, որը նույնպես գերազանցում է յոթնամյակի առաջադրանքը։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման պլանի հաջող կատարումը ապահովեց նաև պետական բյուջեի անթերի կատարումը։

Էլ ավելի հոյակապ և փայլուն հեռանկարներ են բացված մեր ռեսպուբլիկայի առջև 1961 թվականին։

Գերագույն Սովետի սեսիան ռեսպուբլիկայի 1961 թվականի Պետական բյուջեն հաստատեց (գների նոր մասշտաբով հաշված) ըստ եկամուտների՝ 368 միլիոն 524 հազար ռուբլի գումարով և ըստ ծախսերի՝ 367 միլիոն 744 հազար ռուբլի, կամ ծախսերի նկատմամբ եկամուտների 780 հազար ռուբլու գերազանցումով, որից 650 հազար ռուբլին ուղղվելու է դրամարկղային շրջանառու միջոցների ավելացմանը, մնացած

130 հազար ռուբլին կօգտագործվի որպես ռեզերվ։

1961 թվականի համար հաստատված բյուջեն 1960 թվականի բյուջեի նկատմամբ աճում է 13,4 տոկոսով։

Ռեսպուբլիկայի Պետական նոր բյուջեն սովետական մարդկանց նկատմամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հոգատարության վառ արտահայտությունն է և արտացոլում է մեր երկրի էկոնոմիկայի հետագա բուռն զարգացման անշեղ վերելքը։

1961 թվականի Պետական բյուջեի եկամուտները հիմնականում գոյանում են սոցիալիստական արդյունաբերության կուտակումներից, որ բյուջեն ստանում է շրջանառության հարկի և ձեռնարկությունների եկամուտներից մասնահանումների ձևով և կազմում է նրա մուտքի ճնշող մասը՝ 34 միլիոն 449 հազար ռուբլի, կամ ամբողջ մուտքի 92,8 տոկոսը, և միայն 7,2 տոկոսը կգանձվի ազգաբնակչությունից։ Այնինչ կապիտալիստական երկրներում, հատկապես Ամերիկայի Միացյալ Նահանգներում, ազգաբնակչությունից գանձվող հարկերը կազմում են բյուջեի 70 և ավելի տոկոսը։

Հարց է ծագում. կապիտալիստական եր-



կրներում ինչի՞ վրա են ծախսում ժողովրդական միջոցները։ Պատասխանը կլինի՝ հիմնականում սպառազինությունների վրա։ Օրինակ, ԱՄՆ-ում 1960 թվականին ֆեդերալ բյուջեի 60 տոկոսը ծախսվել է ռազմական նպատակների համար, իսկ եթե հաշվի առնենք նաև պետական փոխառությունների գծով եղած ծախսերը, որոնք հիմնականում կապված են սպառազինությունների մրցավազքի հետ, ապա այդ թիվը կհասնի 70 տոկոսի։

Ինչպես տեսնում ենք, կապիտալիստական երկրներում ժողովրդական միջոցները օգտագործվում են առաջին հերթին ռազմական նպատակներով, իսկ մեր երկրում բյուջետային ռեսուրսների գերակշռող մասը գործադրվում է ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման համար։

Մեր ռեսպուբլիկայի Պետական բյուջեի ծախսային մասը կազմված է այն հաշվով, որպեսզի լիովին ապահովի 1961 թվականի ժողովրդական տնտեսության զարգացման պլանում նախատեսված բոլոր միջոցառումների ֆինանսավորումը։

Ռեսպուբլիկայի Պետական բյուջեի ծախսերից 156 միլիոն 775 հազար ռուբլին հատկացված է ծանր արդյունաբերության,

շինարարության, թեթև ու սննդի արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, կապի, բնակարանա-կոմունալ տնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետագա զարգացման ֆինանսավորման համար։ Այդ հատկացումները լիովին կապահովեն, որպեսզի ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1960 թվականի նկատմամբ ավելանա 11,6 տոկոսով, ընդ որում ծանր արդյունաբերության արտադրանքը՝ 12,9 տոկոսով, իսկ սպառման առարկաներինը՝ 9 տոկոսով։

Դրամական այդ հատկացումները կապահովեն արտադրության պահանջվող մեքենայացման ու ավտոմատացման մակարդակը բարձրացնելու, նրա տեխնիկական հետագա վերազինման և արդյունաբերության մեջ գիտահետազոտական աշխատանքների ընդլայնման գործը։

Ռեսպուբլիկայի մեքենաշինական արդյունաբերությունը կյուրացնի արտադրանքի ավելի քան 60 նոր տեսակների արտադրությունը։ Արտադրությունից հանված հնացած մեքենաներն ու հաստոցները կփոխարինվեն նոր տիպի սարքերով, կթողարկվեն գեներատորների, էլեկտրակայանների, էլեկ-



տրաշարժիչների, տեխնոլոգիական պրոցեսների ստուգման ու կարգավորման նոր սարքեր, շինարարությունը կստանա հինգ տոննա բեռնատարողություն ունեցող աշտարակային ամբարձիչներ և այլն։ Մոլիբդենի արտադրությունը կավելանա 21,7 տոկոսով, ռաֆինացված պղնձինը՝ 25,6 տոկոսով, պլաստմասսաների արտադրությունը կավելանա 2 անգամ, ռետինե տեխնիկական իրերինը՝ 56,5 տոկոսով։ Ծանր արդյունաբերության կարևոր ճյուղերից մեկի՝ մեքենաշինության ծավալը 1960 թվականի փաստական կատարման մակարդակը կգերազանցի 23,5 տոկոսով, այդ թվում ռադիոտեխնիկական արդյունաբերությունը կաճի 22 անգամ, հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերությունը՝ 35,7 տոկոսով, սարքաշինությունը՝ 34 տոկոսով։

Բնակարանային շինարարության բարձր տեմպերն ապահովելու նպատակով 1961 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, շինանյութերի արտադրությունը ավելացվելու է 26,3 տոկոսով։

Արտադրանքի թողարկման նախատեսված աճը հիմնականում ապահովվելու է ոչ թե նոր կապիտալ շինարարության, այլ ի հաշիվ

գործող ձեռնարկությունների ընդարձակման և վերակառուցման։

Ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների ամբողջ ծավալը 1961 թվականին կազմելու է 200 միլիոն 200 հազար ռուբլի։

1961 թվականը շրջադարձային տարի պետք է հանդիսանա գյուղատնտեսության զարգացման ասպարեզում, հատկապես անասնապահության, խաղողագործության, պտղաբուծության, բանջարաբուծության, ծխախոտագործության բնագավառում։ Այդ նպատակի համար 1961 թվականի բյուջեով նախատեսվում է 24 միլիոն ռուբլի, որը 20 տոկոսով գերազանցում է 1960 թվականի հատկացումները։ Այդ գումարից Գյուղատնտեսության մինիստրությանը և տնտեսական օրգաններին հատկացված է 13 միլիոն 260 հազար ռուբլի, ջրային տնտեսության մինիստրությանը 7 միլիոն 460 հազար ռուբլի։

Գյուղատնտեսական մթերքների աճը 1961 թվականին, 1960 թվականի փաստական կատարողականի նկատմամբ կկազմի. խաղողինը՝ 58,2, պտուղներինը՝ 16,1, հացահատիկային կուլտուրաներինը՝ 22,7, բանջարեղենինը՝ 51,6, մսինը (կենդանի քաշ)՝



38,3, կաթինը՝ 30, ձվինը՝ 46,2, բրդինը՝ 22,8 տոկոս և այլն։

Գյուղատնտեսության մեջ կիրառվելու են բոլոր միջոցառումները՝ ռեսպուբլիկայում նրա շեշտակի վերելքն ապահովելու համար։

Ռեսպուբլիկայի 1961 թվականի Պետական բյուջեում 188 միլիոն 685 հազար ռուբլի կամ ամբողջ ծախսերի 51,3 տոկոսը հատկացված է սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորմանը։ Այդ թվում լուսավորության միջոցառումներին՝ 106 միլիոն 502 հազար ռուբլի, առողջապահության և ֆիզիկական կուլտուրայի ֆինանսավորմանը՝ 37 միլիոն 580 հազար ռուբլի, սոցիալական ապահովության և սոցիալական ապահովագրության գծով կենսաթոշակների, նպաստների և այլ միջոցառումների ֆինանսավորմանը՝ 36 միլիոն 803 հազար ռուբլի, պետական նպաստ բազմազավակ և միայնակ մայրերին 7 միլիոն 800 հազար ռուբլի։

Գիտական և գիտահետազոտական 94 հիմնարկների պահպանման և նրանց գործունեության ծավալման համար հատկացված է 18 միլիոն 300 հազար ռուբլի, այդ թվում Հայկական ՍՍՌ Գիտությունների

ակադեմիային՝ 11 միլիոն 500 հազար ռուբլի։

1961 թվականի սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար կատարված հատկացումները 1960 թվականի նկատմամբ աճում են 14,6 տոկոսով։

Այս հատկացումները ցույց են տալիս սովետական մարդու նկատմամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության մշտական ու անխոնջ հոգատարությունը։

Միայն Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության իմաստուն լենինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառումը կարող էր և իրոք պատմական տեսակետից շատ կարճ ժամանակամիջոցում ապահովեց Սովետական Միության եղբայրական բոլոր ժողովուրդների, այդ թվում նաև հայ ժողովրդի բարգավաճումը, նրա չտեսնված հաջողությունները կոմունիզմի կառուցման հոյակապ գործում։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ԼԻ ՏԱՐԻՆ


Գ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչի տեղակալ


1960 թվականը ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները ավարտեցին աշխատանքային նոր և պանծալի հաջողություններով։

Արդյունաբերական արտադրանքի թողարկման անցյալ տարվա պլանը կատարվեց ժամկետից շուտ, դեկտեմբերի 21-ին, յոթնամյակի առաջին տարվա դիմաց աճը կազմում է 12,4 տոկոս։ Մանրակրկիտ հաշվումները ցույց են տալիս, որ յոթնամյակի երկու տարում մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության աճի տեմպերը գերազանցում են յոթնամյակի կոնտրոլ թվերից 23,8 տոկոսով։ Այդ նշանակում է, որ Սովետական Հայաստանի արդյունաբերության համախառն ար-

տադրանքի ծավալը 64,4 միլիոն ռուբլով
գերազանցում է յոթնամյա պլանի կոնտրոլ
թվերով 1961 թվականի համար նախատես-
ված մակարդակը։
Անցյալ տարի ռեսպուբլիկայում խոշոր
աշխատանք կատարվեց տեխնիկական պրո-
գրեսի ուղղությամբ։ Արդյունաբերական ձեռ-
նարկություններում արմատավորվեցին ար-
տադրության մեքենայացման և ավտոմա-
տացման տեխնոլոգիական պրոցեսների կա-
տարելագործման ավելի քան 300 կարևորա-
գույն միջոցառումներ։ Այդ հաջողություննե-
րը վկայում են այն մասին, որ արդյունաբե-
րական ձեռնարկությունների կոլեկտիվների
վերցրած սոցիալիստական պարտավորու-
թյունները 1965 թվականի արտադրության
մակարդակին ժամկետից շուտ հասնելու վե-
րաբերյալ, պատվով կկատարվեն։ 1960 թվա-
կանին համախառն արտադրանքի պլանը կա-
տարվել է 102,3 տոկոսով։ Արտադրանքի
աճը 1959 թվականի նույն ժամանակաշրջա-
նի հետ համեմատած կազմում է 11,7 տո-
կոս։ Անցած տարում արդյունաբերական
ձեռնարկությունները պլանից դուրս արտա-
դրել են միլիոնավոր ռուբլիների ար-
տադրանք։ Ստանձնած պարտավորություն-
ները պատվով կատարեցին նաև ժողտըն-



խորհի ձեռնարկությունների կոլեկտիվները։ Նրանք 1960 թվականին երկրին տվել են մի քանի միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Պլանից դուրս արտադրվել են մեծ քանակությամբ գեներատորներ, հիդրոպոմպեր, ցեմենտ, ավտոդողեր, ալյումին, քիմիկատներ, կոշկեղեն, գործվածքեղեն, միս, կաթնամթերք և այլն։

Ռեսպուբլիկայում անցած տարի համախառն արտադրանքի տարեկան պլանները գերակատարել է ավելի քան 100 արդյունաբերական ձեռնարկություն։ Կիրովի անվան, Հիդրոպոմպերի, Ռետինա-տեխնիկական առարկաների գործարանների, Քաջարանի Պղնձա-մոլիբդենային կոմբինատի, Կիրովականի Կահույքի, Սովետաշենի Տրիկոտաժի ֆաբրիկաների կոլեկտիվները գերազանց ցուցանիշներով են կատարել վերցրած պարտավորությունները։

Այս տարի շարք են մտել 80-ից ավելի նոր գործարաններ, ֆաբրիկաներ, ցեխեր, արտադրական կորպուսներ։ Երևանում, Կիրովականում, Լենինականում և Լուսավանում շարք են մտել հաստոցաշինական գործարաններ, միկրոէլեկտրաշարժիչների գործարանը Լենինականում և մի շարք կարևոր ցեխեր ու արտադրական կորպուսներ Երևա-

նի Կիրովի անվան, Ավտոդողերի, Ալյումի-
նի գործարաններում, Ալավերդու Պղնձաքի-
միական կոմբինատում և այլն։
Առաջնորդվելով ՍՄԿՊ XX և XXI համա-
գումարների պատմական որոշումներով, ինչ-
պես առաջ, այնպես էլ այժմ արդյունաբե-
րության ճյուղերում զարգացման առանձնա-
կի աճ ունի ծանր արդյունաբերությունը։ Է-
լեկտրատեխնիկական արդյունաբերության
արտադրանքի ծավալը մեկ տարում ավելա-
ցել է 30 տոկոսով, գունավոր մետալուրգիա-
յի և լեռնահանքային արդյունաբերությանը
20 տոկոսով, մեքենաշինության և հաստոցա-
շինության արդյունաբերությունը՝ 24 տոկո-
սով, շինանյութերի արդյունաբերությունը՝ 9
տոկոսով, քիմիական արդյունաբերությունը՝
15 տոկոսով և այլն։

Տարվա սկզբից արդյունաբերական ձեռ-
նարկությունների կողմից իրացվել և մաս-
սայական կերպով թողարկվում են 100-ից
ավելի արտադրանքի նոր տեսակներ՝ նոր
տիպի տրանսֆորմատորներ ալյումինե փա-
թաթվածքով, գեներատորներ, հատուկ մե-
տաղահատ հաստոցներ, էլեկտրական լարեր,
սինթետիկ նյութեր, սարքեր, էլեկտրաճշգրիտ
գործիքներ, կահույք, կոշկեղեն և այլն։ Ան-
ցյալ տարի արդյունաբերական ձեռնարկու-



թյունները զգալի հաջողությունների հասան արտադրության մեջ տեխնիկա-էկոնոմիկական ցուցանիշների բարձրացման ուղղությամբ։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը կատարված է 100,7 տոկոսով, աճը անցյալ տարվա համեմատությամբ կազմում է 4,5 տոկոս, Ժողտնտխորհի ձեռնարկությունները աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել են 0,8 տոկոսով, անցյալ տարվա համեմատությամբ աճը կազմել է 5 տոկոս, ըստ որում այդ ուղղությամբ բարձր ցուցանիշների են հասել գունավոր մետալուրգիայի և քիմիական արդյունաբերության աշխատողները, որոնք աշխատանքի արտադրողականության պլանը անցյալ տարվա համեմատությամբ բարձրացրել են 12—18 տոկոսով։

Արդյունաբերության առաջընթացը այս տարի, ինչպես նաև անցած տարիներին, գնում է տեխնիկական պրոգրեսի, արտադրության, աշխատատար պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման հետագա զարգացման նշանաբանով։ Միայն անցյալ տարվա 9 ամիսների ընթացքում արդյունաբերության մեջ ներդրվել է տեխնիկական պրոգրեսի զարգացմանը նպաստող 220 խոշոր միջոցառում։

Լայն թափ է ստացել ռացիոնալիզատոր-
ների և գյուտարարների շարժումը։ Անցած
9 ամիսների ընթացքում ռացիոնալիզատոր-
ները արել են 13.700 առաջարկ, որոնցից
ներդրվել է արդեն 9.140-ը, ներդրված առա-
ջարկություններից ստացված էկոնոմիկական
էֆեկտը տարեկան կազմում է ավելի քան 61
միլիոն ռուբլի։

Արդյունաբերության զարգացման բնագա-
վառում ավելի մեծ աշխատանք կկատարվի
այս տարի։ Նախատեսված է և նախնական
կազմակերպական աշխատանք է կատար-
ված, որպեսզի այս տարի մեքենաշինական
արդյունաբերությունը յուրացնի արտադրան-
քի ավելի քան 60 նոր տեսակներ, այդ թվում
էլեկտրակայանների, գեներատորների, էլեկ-
տրաշարժիչների նոր տիպեր ու սարքեր,
բարձրավոլտ էլեկտրական ապարատուրա և
բազմաթիվ նոր տիպի սարքեր։

Նոր տարում ավելի բարձր զարգացման
կհասնի քիմիական արդյունաբերությունը։
Կկազմակերպվի կաուչուկի նոր տեսակների,
ալյումինի և բազմաթիվ քիմիական նոր նյու-
թերի արտադրություն։ Ընդհանրապես քի-
միական արդյունաբերության արտադրանքի
ծավալը 1961 թվականի համար նախատես-
ված մակարդակը կգերազանցի 17,4 տոկո-





սով։ Անցյալ տարվա համեմատությամբ
այս տարի սինթետիկ խեժերի և պլաստ-
մասսաների արտադրությունը կավելանա եր-
կու անգամ, կորունդինը՝ 90,6 տոկոսով, քա-
ցախաթթվինը՝ 58,2 տոկոսով, ռետինե տեխ-
նիկական իրերինը՝ 56,5 տոկոսով, վինիլա-
ցետատինը՝ 29,5 տոկոսով և այլն։

Յոթնամյակի երրորդ տարում բուռն թա-
փով կզարգանա մեքենաշինությունը, որի
արտադրանքի ծավալը նախորդ տարվա հա-
մեմատությամբ կգերազանցի 23,5 տոկոսով,
ընդ որում ռադիոտեխնիկական արդյունաբե-
րության արտադրանքի ծավալը կավելանա
2,2 անգամ, հաստոցաշինական և գործիքա-
շինական արդյունաբերությանը՝ 35,7 տոկո-
սով, սարքաշինությանը՝ 34 տոկոսով, էլեկ-
տրատեխնիկական արդյունաբերությանը՝
22,4 տոկոսով։

Այս տարի արդյունաբերական արտադրան-
քի թողարկումն ավելանալու է հիմնականում
ի հաշիվ գործող ձեռնարկությունների ըն-
դարձակման և վերակառուցման։

Այս տարի մեծ աշխատանք կկատար-
վի Երևանի ջերմա-էլեկտրակայանի շինա-
րարության ուղղությամբ, որպեսզի 1962
թվականին կայանի առաջին հերթը հանձնվի
շահագործման։

1961 թվականին նախատեսված է արդյու- նաբերական և կոմունալ-կենցաղային կա- րիքների համար օգտագործել 320 միլիոն խորանարդ մետր բնական գազ։ Ավելի քան 19 հազար 500 բնակարան կենթարկվի գա- զիֆիկացման։

Վիթխարի աշխատանք կկատարվի թեթև և սննդի արդյունաբերության զարգացման ուղղությամբ։ Ռեսպուբլիկայում բամբակե գործվածքների արտադրությունը կավելանա 3 միլիոն 500 հազար մետրով, բրդե գործ- վածքներինը՝ 180 հազար մետրով, գուլ- պեղենինը՝ 2 միլիոն 800 հազար զույգով, կաշվե-կոշկեղենինը՝ 525 հազար զույգով։

Մեր ռեսպուբլիկայում նոր տարին նոր հա- ջողություններ կբերի նաև կապիտալ շինա- րարության ուղղությամբ։ 1961 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, 30,6 տո- կոսով շատ կապիտալ շինարարություն կկա- տարվի։ Պլանով նախատեսված է 1961 թվա- կանին կատարել 200,2 միլիոն ռուբլու շինա- րարական աշխատանք։

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները կեռա- պատկեն իրենց ուժերը յոթնամյակի երրորդ տարում ավելի փայլուն հաջողությունների հասնելու համար։

—•—



# ԱՎԵԼԻ ԽՈՐ ԵՎ ԲԱԶՄԱԿՈՂՄԱՆԻՈՐԵՆ ՊԱՐԶԱԲԱՆԵԼ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԿՈՄՊԱՐՏԻԱՆԵՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ՆՅՈՒԹԵՐԸ

Վ. ՍԱՀԱԿՅԱՆ

## Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

Ագիտատորը Կոմունիստական և բանվո- րական պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայի խորհրդակցությունում առաջ քաշված հարցերը մեկնաբանելիս պետք է շեշտի, որ այն տեղի ունեցավ եղբայրական բարեկամության մթնոլորտում, մարքսիզմ- լենինիզմի, պրոլետարական ինտերնացիո- նալիզմի անխախտ սկզբունքների հիման վրա, որը ցուցադրեց խորհրդակցության մասնակիցների հայացքների միասնությունը քննարկված հարցերում և նրանց հավատար- մությունը սոցիալիզմի ու կոմունիզմի վեհ գործին։

Ավելի նպատակահարմար կլինի, որպես- զի իր զրույցը ագիտատորը պլանավորի ըստ

խորհրդակցության Հայտարարության բաժինների։ Հայտարարության ներածական բաժնի մասին խոսելիս ագիտատորը պետք է իր ունկնդիրներին տեղեկացնի, որ Մոսկվայի խորհրդակցության մասնակիցներն իրենց հավատարմությունը հայտնեցին 1957 թվականի Դեկլարացիային ու խաղաղության Մանիֆեստին, ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի այդ ծրագրային փաստաթղթերին, որոնք մարտական դրոշ և գործողության ուղեցույց են մնում միջազգային ամբողջ կոմունիստական շարժման համար։ Այնուհետև նա պետք է մեջ բերի Հայտարարության այն դրույթները, որոնցում տրվում է վերջին երեք տարիների գլխավոր արդյունքների, այն է՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորության ու միջազգային ազդեցության շեշտակի աճման, ազգային-ազատագրական շարժման հարվածների տակ գաղութային սիստեմի քայքայման, կապիտալիստական աշխարհում դասակարգային ճակատամարտերի ուժեղացման, համաշխարհային կապիտալիստական սիստեմի հետագա անկման ու քայքայման գնահատականը։

Հայտարարության առաջին բաժնի մասին խոսելիս ագիտատորը պետք է հիմնական



ուշադրությունը նվիրի նրանում տրված արդի դարաշրջանի բնութագրմանը։ Հայտարարության մեջ ասվում է. «Մեր դարաշրջանը, որի հիմնական բովանդակությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելն է, որն սկսվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայով, հասարակական երկու հակադիր սիստեմների պայքարի դարաշրջանն է, սոցիալիստական ռևոլյուցիաների և ազգային-ազատագրական ռևոլյուցիաների դարաշրջանը, իմպերիալիզմի կործանման, գաղութային սիստեմի վերացման դարաշրջանը, սոցիալիզմի ուղին նորանոր ժողովուրդների անցման, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը»։ Ագիտատորը պետք է ընդգծի, որ մեր ժամանակի գլխավոր բնորոշ գիծն այն է, որ համաշխարհային սոցիալիստական սիստեմը վերածվում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնի։ Սոցիալիզմը նոր հաղթանակներ նվաճեց կապիտալիզմի դեմ մղվող պայքարում։ Պետք է ուշադրություն հրավիրվի այն կարևոր փաստի վրա, որ սոցիալիզմը այժմ վճռական մրցության մեջ է մտել կապիտալիզմի հետ, որ մոտենում է այն ժամանակը, երբ համաշխարհային ար-

տադրության մեջ իր տեսակարար կշռով սո-
ցիալիզմը դուրս կգա առաջին տեղը և դրա-
նով իսկ կապիտալիզմը պարտություն կկրի
մարդկային գործունեության վճռական ո-
լորտում—նյութական արտադրության ոլոր-
տում։

Ագիտատորը պետք է իր ունկնդիրներին
հանգամանորեն պարզաբանի, որ ի հակա-
դրություն սոցիալիզմի սիստեմի, համաշ-
խարհային կապիտալիստական սիստեմը
անկման և քայքայման խոր պրոցես է ապ-
րում։ Առավել սրվել է արտադրողական
ուժերի և արտադրական հարաբերություննե-
րի միջև եղած կոնֆլիկտը։ Կապիտալիզմը
ավելի ու ավելի է խոչընդոտում գիտության
ու տեխնիկայի նվաճումները արտադրու-
թյան մեջ օգտագործելուն։

Ագիտատորը պետք է փաստերով ցույց
տա, որ կապիտալիզմի նեխումը ամենից
առավել երևում է ԱՄՆ-ում, որը դարձել է
զգալի խրոնիկական գործազրկության և ար-
դյունաբերության թերաբեռնվածության եր-
կիր։

Այս առումով շատ հետաքրքիր ձևով էր
կազմել իր զրույցը Ձերժինսկու անվան հաս-
տոցաշինական գործարանի գործիքային ցե-
խի ագիտատոր Ն. Ստեփանյանը։ Ագիտատո-



րը խոսուն թվերով ցույց տվեց, որ վերջին
տարիներին արտադրության աճի տեմպերը
ԱՄՆ-ում զգալիորեն դանդաղել են։ Նա հա-
մեմատության մեջ դրեց ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի
արդյունաբերական արտադրանքի աճը։ Եթե
1957—1959 թվականներին ՍՍՌՄ-ի արդյու-
նաբերական արտադրանքն աճել է 23 տոկո-
սով, ապա ԱՄՆ-ինը ընդամենը 4,6 տոկո-
սով։ Նույն տարիներին ՍՍՌՄ-ում միջին
տարեկան աճը կազմել է 10,9 տոկոս, իսկ
ԱՄՆ-ում՝ 2,4 տոկոս։ Ագիտատորը հիշատա-

կեց, որ ԱՄՆ-ում հաճախակի են դարձել գե-
րարտադրության ճգնաժամերը։ Ամերիկյան
իմպերիալիզմը դարձել է միջազգային ամե-
նախոշոր շահագործողը, համաշխարհային
ռեակցիայի գլխավոր հենարանն ու միջազ-
գային ժանդարմը, ամբողջ աշխարհի ժողո-
վուրդների թշնամին։ Այնուհետև ագիտա-
տորը փաստերով ցույց տվեց Ասիայի, Աֆ-
րիկայի և Լատինական Ամերիկայի ժողո-
վուրդների պայքարը իմպերիալիզմի դեմ,
նշեց դեմոկրատական ու ազգային-ազատա-
գրական շարժումների հաջողությունները,
ինչպես նաև բանվորական շարժման ծավա-
լումը կապիտալիստական երկրներում։

Ագիտատորը պետք է ընդգծի, որ սոցիա-
լիզմի համաշխարհային սիստեմի անընդհատ

աճը, իմպերիալիզմի դիրքերի թուլացումը, ազգային-ազատագրական պայքարի նոր վերելքը, գաղութային սիստեմի արագ քայքայումը, կապիտալիստական սիստեմի անկայունության աճը, կապիտալիզմի հակասությունների սրումը, բուրժուական քաղաքականության և գաղափարախոսության խոր ճգնաժամը վկայում են այն մասին, որ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի զարգացման մեջ սկսվել է նոր էտապ։

Անցնելով Հայտարարության երկրորդ բաժնի մեկնաբանմանը, ագիտատորը պետք է հանգամանորեն ցույց տա համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի ձեռք բերած վճռական հաջողությունները։ Նա պետք է նշի, որ սոցիալիստական համաշխարհային սիստեմը թևակոխել է իր զարգացման նոր փուլը։ ՍՍՌՄ-ում հաջողությամբ իրականացվում են յոթնամյակի պատմական խնդիրները, կառուցվում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան։ Չինաստանի ժողովրդական ռևոլյուցիան կործանիչ հարված հասցրեց իմպերիալիզմի դիրքերին Ասիայում, հըսկայական չափով նպաստեց սոցիալիզմի օգտին համաշխարհային ուժերի հարաբերակցության փոփոխմանը։ Սոցիալիզմի կառուցման գործում հսկայական հաջողու-



թյունների հասան ժողովրդական դեմոկրատիայի երկրները։ Այդ երկրներում կարճ ժամանակում իրականացվեց ինդուստրացումը։ Հաջողությամբ է լուծվում սոցիալիստական շինարարության ամենադժվար հարցը՝ գյուղատնտեսության կոոպերացումը։ Ագիտատորը պետք է հիշեցնի իր ունկնդիրներին Հայտարարության կարևոր դրույթն այն մասին, որ այժմ ոչ միայն Սովետական Միությունում, այլև սոցիալիստական մյուս երկրներում վերացված են կապիտալիզմի ռեստավրացիայի սոցիալ-տնտեսական հնարավորությունները, որ սոցիալիստական երկրների միացյալ ուժերը կարող են պաշտպանել յուրաքանչյուր երկրի՝ իմպերիալիզմի ոտնձգություններից։

Ագիտատորը պետք է պարզաբանի նաև, որ սոցիալիստական երկրների բոլոր նվաճումների ու հաջողությունների կարևորագույն պայմանը նրանց փոխադարձ օգնությունն է և աջակցությունը, սոցիալիստական լագերի միասնության ու համախմբվածության բոլոր առավելությունների օգտագործումը։ Պետք է հիշատակել սոցիալիստական երկրների ժողովրդա-տնտեսական պլանների կոորդինացման, արտադրության մասնագիտացման ու կոոպերացման աշխատանքի

միջազգային բաժանման կատարելագործման մեծ նշանակությունը սոցիալիզմի կառուցման և սոցիալիզմից կոմունիզմին անցնելու գործում։

Անդրադառնալով Հայտարարության երրորդ բաժնին, որտեղ խոսվում է մեր ժամանակի ամենահրատապ պրոբլեմի, պատերազմի ու խաղաղության պրոբլեմի մասին, ագիտատորը պետք է խոսի նաև ամբողջ աշխարհի ժողովուրդներին ուղղված Դիմումի մասին։

Հայտնի է, որ պատերազմը կապիտալիզմի ուղեկիցն է, քանի պահպանվում է իմպերիալիզմը, հող է մնում նոր պատերազմների համար։ Ագրեսիայի և պատերազմի գլխավոր ուժը այժմ ամերիկյան իմպերիալիզմն է, որը սպառնալիքի տակ է դրել խաղաղությունն ու անվտանգությունը։ Միաժամանակ ուժեղանում է արևմտա-գերմանական իմպերիալիզմը, պատերազմի օջախ է ստեղծվում Ճապոնիայում։ Իմպերիալիստները վիժեցնում են զինաթափման ուղղությամբ ՍՍՌՄ-ի և մյուս խաղաղասեր երկրների առաջարկությունների լուծումը։

Այս ամենի հետ միասին ագիտատորը պետք է իր զրույցի ընթացքում ցույց տա, որ ներկայումս ստեղծվել են այնպիսի ռեալ



ուժեր, որոնք կարող են վիժեցնել իմպերիալիստների ագրեսիվ պլանները և կանխել պատերազմը։ Այնպես որ պատերազմի ճակատագրական անխուսափելիություն այլևս չկա։ Իսկ որո՞նք են այդ ռեալ ուժերը։ Այդ, ամենից առաջ Սովետական Միության անընդհատ աճող տնտեսական ու պաշտպանական հզորությունն է, անշեղորեն ամրապնդվող սոցիալիստական լագերը, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի խաղաղասեր պետություններն են, միջազգային բանվոր դասակարգը և նրա կազմակերպությունները, ազգային-ազատագրական շարժումը, խաղաղության մարտիկների համաշխարհային շարժումը, չեզոք երկները և այլն։

Ագիտատորը պետք է նշի, որ պատերազմը կանխելու, խաղաղությունն ապահովելու կարևոր պայմանն է խաղաղ գոյակցության քաղաքականության կիրառումը, որ հռչակել է Սովետական Միությունը։

Խոսելով Հայտարարության հաջորդ, չորրորդ բաժնի մասին, ագիտատորը պետք է հիմնական ուշադրությունը նվիրի ազգային-ազատագրական շարժման ձեռք բերած մեծ հաջողություններին։ Այս տեսակետից ուսանելի է Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրամեքենաշինական գործարանի ագիտատոր Ա.

Մելիք-Սահակյանի զրույցը։ Նա զրույցի
սկզբում հիշատակեց, որ մինչև երկրորդ
համաշխարհային պատերազմը Ասիայի,
Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ավելի
քան 1,6 միլիարդ բնակչություն ունեցող եր-
կըրներ գտնվում էին գաղութային ճնշման
տակ։ Ներկայումս դրությունը ամբողջովին
փոխվել է։ Հետպատերազմյան շրջանում ա-
ռաջ եկան 40 նոր պետություններ, որոնք
մինչ այդ գտնվում էին գաղութային ծանր
լծի տակ։ Ագիտատորն ընդգծեց, որ գաղու-
թային սիստեմի կործանումը սոցիալիզմի
համաշխարհային սիստեմի կազմավորումից
հետո իր պատմական նշանակությամբ երկ-
րորդ երևույթն է։

Միաժամանակ պետք է ցույց տալ, որ ներ-
կայումս գաղութատիրության գլխավոր
պատվարը ԱՄՆ-ն է, որը ձգտում է զանա-
զան միջոցներով իր հսկողությունը պահպա-
նել ազատագրված երկրների վրա, կախման
մեջ գցել նրանց։ Ագիտատորը պետք է հան-
գամանորեն պատմի այն վիթխարի գործու-
նեության մասին, որ կատարում են կոմու-
նիստական ու բանվորական պարտիաները
գաղութային սիստեմը ամբողջովին վերաց-
նելու, ազգային-ազատագրական և դեմո-



կրատական ռևոլյուցիաների հաղթանակի
համար։

Հինգերորդ բաժնի մասին խոսելիս ագի-
տատորը պետք է իր ունկնդիրներին
պարզաբանի, որ շնորհիվ համաշխարհային
ասպարեզում ուժերի նոր հարաբերակցու-
թյան, կոմունիստական և բանվորական
պարտիաների առջև նոր հնարավորություն-
ներ են բացվել խաղաղության, դեմոկրա-
տիայի և սոցիալիզմի համար մղվող պայ-
քարում։ Նրանք պետք է պատրաստեն աշ-
խատավորական մասսաներին սոցիալիստա-
կան ռևոլյուցիայի հաղթանակի համար։
Գլխավոր հարվածը պետք է ուղղել կապի-
տալիստական մոնոպոլիաների դեմ, ամե-
րիկյան տիրապետության դեմ։

Անդրադառնալով Հայտարարության վեր-
ջին՝ վեցերորդ բաժնին, ագիտատորը պետք
է փաստերով ցույց տա կոմունիստական
շարժման աճը։ Արժե այստեղ հիշատակել
Ալյումինի գործարանի էլեկտրոլիզի ցեխի
ագիտատոր Ա. Ավետիսյանի զրույցը։ Նա
նշեց, որ համաշխարհային կոմունիստական
շարժումը դարձել է մեր ժամանակի ամե-
նաազդեցիկ քաղաքական ուժը, հասարա-
կական առաջադիմության կարևոր գործոնը։
Ագիտատորը մատնացույց արեց կոմունիս-

տական շարժման միասնության ապահովման համար ռևիզիոնիզմի, ինչպես նաև դոգմատիզմի ու աղանդավորության դեմ վճռական պայքարի անհրաժեշտությունը։ Նա ընդգծեց ՍՄԿՊ ավանգարդային դերը միջազգային կոմունիստական շարժման մեջ։ Հայտարարության այս բաժնի մասին զրուցելիս ագիտատորը պետք է հատկապես կանգ առնի ՍՍՌՄ-ի և ՉԺՌ-ի, ՍՄԿՊ-ի և ՉԿՊ-ի բարեկամության և եղբայրական կապերի հետագա ամրապնդման հարցի վրա, որը հսկայական նշանակություն ունի ընդհանրապես համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա ամրապնդման համար։

Զրույցի վերջում ագիտատորը պետք է ընդգծի, որ Մոսկվայի խորհրդակցությունը մի կարևոր էտապ էր համաշխարհային կոմունիստական շարժման պատմության մեջ, իսկ նրա ընդունած պատմական փաստաթղթերը մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման մի նոր աստիճանն են։



## ՀԱՅԿԱԿԱՆ ԿԻՆՈԱՐՎԵՍՏԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԾՆՈՒՆԴՆ Է

Հայկական կինեմատոգրաֆիան ստեղծվել է 1923 թվականին Լուսժողկոմատի սիստեմում։ Անցյալից ոչ մի ժառանգություն չստանալով, այն ՀԿՊ Կենտկոմի և ՀՍՍՌ Ժողկոմսովետի ղեկավարությամբ աճեց ու զարգացավ ռուսական կինոարվեստի գաղափարական, ստեղծագործական և կազմակերպական ու ֆինանսական հսկայական օգնությամբ։

Հայկական կինոարվեստը սովետական կինոյի անբաժանելի մասն է, նրա ազգային ջոկատներից մեկը։

Անցած 37 տարիների ընթացքում բաց է թողնվել 237 կինոնկար, որից գեղարվեստական՝ 76, դոկումենտալ՝ 138, գիտա-պոպուլյար՝ 19, մուլտիպլիկացիոն՝ 3 և մոտ 1.000 համար խրոնիկալ կինոժուռնալ։

Առավել նշանավոր ֆիլմերը հետևյալներն են՝ «Նամուս», «Զարե», «Խասփուշ», «Տունը հրաբխի վրա», «Պեպո», «Զանգեզուր», «Դավիթ բեկ», «Ամպրոպի արահետով», «Պատ-

վի համար», «Սիրտը երգում է», «Մոր սիր-
տը», «Անձամբ ճանաչում եմ, Կամո», «Առա-
ջին սիրո երգը», «Հյուսիսային ծիածան»։

Դոկումենտալ հաջողված ֆիլմերից են՝ «Սովետական Հայաստան» (Հայկական առաջին կինոնկարը), «Երկիր Նաիրի», «Տասնհինգամյակ», «Ուրախության երկիր», «Հայրենի երկիր», «Սևանի ջրերը», «Սովետական Հայաստան», «Դարեր և տարիներ», «Հայաստանն այսօր», «Պոեմ Հայաստանի մասին» կինոնկարները։

Գեղարվեստական կինոնկարներն ըստ թեմատիկայի բաժանվում են երեք խմբի. ա) ժամանակակից թեմատիկա՝ 43 ֆիլմ, բ) պատմական և պատմա-ռևոլյուցիոն թեմատիկա՝ 15 ֆիլմ, գ) գրական ստեղծագործությունների նկարահանում՝ (էկրանիզացիա) 13 ֆիլմ։

Այսպիսով, էկրանի բաց թողած կինոնկարների գերակշռող մասը (մոտ 60 տոկոսը) ժամանակակից թեմայով ստեղծված ֆիլմեր են։

Հայկական կինոարվեստի հիմնական բովանդակությունը՝ սոցիալիստական իրականությունն է, կոմունիստական շինարարության համար մղվող պայքարը, սովետական մարդկանց ստեղծագործ աշխատանքը։



Աճել են ռեժիսյորների, օպերատորների, դերասանների, սցենարիստների, նկարիչների, կոմպոզիտորների, ինչպես նաև արտադրական և ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական կադրերը։

## ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԿԻՆՈՖԻԿԱՑԻԱՆ

Մինչ Սովետական իշխանությունը Հայաստանում կար ընդամենը 2 կինոթատրոն՝ մեկը Երևանում, մյուսը՝ Լենինականում։ Այժմ ռեսպուբլիկայում կա 426 կինոկետ, որից՝ 75-ը քաղաքային (63 կինոթատրոն, 7 ամառային հրապարակ, 5 շրջիկ կինո), 351-ը գյուղական, այդ թվում՝ 283 ստացիոնար և 68 շրջիկ կինո։

1959 թվականին և 1960 թվականի առաջին կեսին կինո է հաճախել 20.700.000 մարդ։

Ռեսպուբլիկայի կինոբնագավառի աշխատողները, ղեկավարվելով պարտիայի և կառավարության որոշումներով, իրենց ամբողջ ուշադրությունը կենտրոնացրել են այն ֆիլմերի արտադրության վրա, որոնք արտացոլում են մեր իրականությունը, սովետական մարդկանց կյանքը և կոմունիզմի հաղթանակի համար մղվող նրանց պայքարը։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Արժանավայել գործերով դիմավորենք ՍՄԿԿ XXII համագումարը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Կոմունիստական պարտիայի դերի մասին, *արտասանած Կոմինտերնի 2-րդ կոնգրեսում, Երկեր, հատոր 31, էջ 283—288, Հայպետհրատ, 1952։*

ՍՄԿԿ հերթական՝ XXII համագումարի հրավիրման մասին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը՝ *ընդունված 1961 թվականի հունվարի 10-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 11-ի համարում։*

Դեպի ՍՄԿԿ XXII համագումար, «Պրավդա»-ի *1961 թվականի հունվարի 12-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 13-ի համարում։*

## 2. ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հողագործության ու անասնաբուծության մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի 1960 թվականի պետական պլանի ու սոցիալիստական պարտավորությունների կատարման և գյուղատնտե-



սության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը՝ ընդունված 1961 թվականի հունվարի 18-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 20-ի համարում։*

ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի մասին ինֆորմացիոն նյութեր, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 11—17-ի համարներում։*

## 3. Անխորտակելի միասնություն և համախմբվածություն

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Միասնության մասին, *Երկեր, հատոր 20, էջ 395—398, Հայպետհրատ, 1950։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Իտալական սոցիալիստական պարտիայի ներսում մղվող պայքարի մասին, *Երկեր, հատոր 21, էջ 471—495, Հայպետհրատ, 1952։*

Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 8-ի համարում։*

Ամբողջ աշխարհի կոմունիստների մարքս-լենինյան ծրագիրը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 8-ի համարում։*

Խորապես ուսումնասիրել և պարզաբանել պատմական փաստաթղթերը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 29-ի համարում։*

Միասնությունն ու համախմբվածությունը միջազգային կոմունիստական և բանվորական շարժման ուժն է, *Հայաստանի պարտիական կազմակերպության ակտիվի ժողովը, տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 30-ի համարում։*

## 4. Պատվով կատարենք յոթնամյակի երրորդ տարվա խնդիրները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Դեպի ՍՄԿՊ XXII համագումար, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 13-ի համարում։*

Յոթնամյակն է քայլում մեր լեռնաշխարհով, *նյութեր յոթնամյա պլանը հաջողությամբ կատարելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 28-ի համարում։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի վեցերորդ սեսիայում դեպուտատ Ս. Հ. Մովսիսյանի ելույթը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 24-ի համարում։*

Նոր տարվա շեմքին, *«Ս Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 31-ի առաջնորդողը։*

## 5. Հայկական ՍՍՌ շրջանային, քաղաքային, գյուղական ու ավանային Սովետների ընտրությունները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը Հայկական ՍՍՌ աշխատավոր-



ների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյու-
ղական ու ավանային Սովետների ընտրություններ
անցկացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961*
*թվականի հունվարի 13-ի համարում։*

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբ-
լիկայի Կոնստիտուցիա *(հիմնական օրենք)։*

Կանոնադրություն Հայկական ՍՍՌ աշխատավոր-
ների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյու-
ղական և ավանային Սովետների ընտրությունների։

Ա. ԳՈՐՇԵՆԻՆ, Ի. ԶԵԼՅԱՊՈՎ— *Սովետական ընտ-*
*րական սիստեմը, առանձին բրոշյուր։*

Շ. Ն. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Հայկական ՍՍՌ պետական
իշխանության տեղական օրգանները, *առանձին բրոշ-*
*յուր։*

## 6. Սովետական Հայաստանը յոթնամյակի երրորդ տարում

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Օրենք Հայկական Սովետական Սոցիալիստական
Ռեսպուբլիկայի 1961 թվականի Պետական բյուջեի
մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկ-*
*տեմբերի 31-ի համարում։*

Լ. Ս. ԽԱԶԱՏՐՅԱՆ— *Հայկական* ՍՍՌ ժողովրդական
տնտեսության զարգացման 1961 թվականի Պետական
պլանի մասին, *զեկուցում Հայկական ՍՍՌ Գերա-*
*գույն Սովետի չորրորդ սեսիայում, տպագրված*

«Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 30-ի համարում։

Ա. Կ. ՇԵԿՈՅԱՆ— Հայկական ՍՍՌ 1961 թվականի Պետական բյուջեի և Հայկական ՍՍՌ 1959 թվականի Պետական բյուջեի կատարման հաշվետվության մասին, զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի չորրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 30-ի համարում։

## 7. Լրիվ նախապատրաստված դիմավորենք գարնանացանը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ Կենտկոմի հունվարյան պլենումի նյութերը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի համարներում։

Լավ սերմը առատ բերքի հիմքն է, «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 12-ի առաջնորդողը։

Գ. ՍՏԵՓԱՆՅԱՆ— Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը 40 տարում, հոդված, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1960 թվականի 10 և 11 միացյալ համարում։

## 8. Հաջողությամբ անցկացնենք անասունների ձմեռումը և ծնի կամպանիան

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայաստանի Կոմունիստական պարտիայի XXI համագումարի բանաձևը, էջ՝ 16—23, Հայպետհրատ, 1960։



Ինչպես նորանոր նվաճումներ, «Ս. Հ.»-ի 1961 թվա-
կանի հունվարի 10-ի առաջնորդողը։
Մսուրային շրջանը հաջող անցկացնելու համար,
հոդված, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական»
ամսագրի 1960 թվականի 10 և 11 միացյալ համա-
րում։

## 9. Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի օրը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Ռազմական Նավատորմի Հա-
մառուսաստանյան առաջին համագումարում 1917
թվականի նոյեմբերի 22-ին (դեկտեմբերի 5-ին),
Երկեր, հատոր 26, էջ՝ 415—423, Հայպետհրատ,
1951։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Նամակ բանվորներին և գյուղա-
ցիներին Կոլչակի դեմ տարած հաղթանակի առթիվ,
Երկեր, հատոր 29, էջ 686—696, Հայպետհրատ, 1951։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ազատության և անկախության
բոլոր գաղութային ժողովուրդներին, լուծել ընդհանուր
զինաթափման պրոբլեմը, ելույթ Միավորված Ազգերի
Կազմակերպության Գլխավոր ասամբլեայի 15-րդ
սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի
սեպտեմբերի 24-ի համարում։

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՒ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆԵՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ՆՅՈՒԹԵՐՈՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ, ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԹԵՄԱՆԵՐ

1. Կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարությունը ամբողջ աշխարհի կոմունիստների մարքս-լենինյան ծրագիրն է։

2. Ամբողջ աշխարհի ժողովուրդներին ուղղված Դիմումը խաղաղության համար, պատերազմի դեմ ուղղված պայքարի մարտական կոչ է։

3. Քսաներորդ դարը կոմունիզմի հաղթանակի դարն է։

4. Ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմը կոմունիստական ու բանվորական պարտիաների կենսագործունեության հիմքն է։

5. Մարքս-լենինյան պարտիաների միասնությունն ու համախմբվածությունը համաշխարհային կոմունիստական շարժման աճող ուժի աղբյուրն է։

6. Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունն է։

7. Համաշխարհային սոցիալիստական սիստեմը դառնում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնը։



8. Համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման նոր էտապը։

9. ՍՍՌՄ-ում կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի բնորոշ գծերը։

10. Մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների խստիվ պահպանումը սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների անխախտ օրենքն է։

11. Աշխատավորների դաստիարակությունը ինտերնացիոնալիզմի ու հայրենասիրության զուգորդման ոգով, պայքար բուրժուական նացիոնալիզմի և շովինիզմի մնացուկների դեմ։

12. Սոցիալիստական պետությունները համաշխարհային զարգացման վրա հզոր ներգործություն ցույց տվող ինտերնացիոնալ ուժ են։

13. Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի զարգացման նոր էտապի յուրահատկությունը։

14. Համաշխարհային կապիտալիստական սիստեմի անկման և քայքայման պրոցեսը։

15. Ամերիկյան իմպերիալիզմը համաշխարհային ռեակցիայի գլխավոր հենարանն է, ամբողջ աշխարհի ժողովուրդների թշնամին։

16. Բուրժուական գաղափարախոսության և քաղաքականության ճգնաժամը։

17. Արդիականության մեծ ուժերը, որոնք ողողումտանում և խորտակում են իմպերիալիզմի համաշխարհային սիստեմը.

18. Ժամանակակից էտապում հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական, հակապատերազմական ու դասակարգային պայքարի աճը։

19. Պատերազմի և խաղաղության պրոբլեմը մեր ժամանակի ամենահրատապ պրոբլեմն է։

20. Համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության փոփոխությունը և արդի պայմաններում պատերազմը կանխելու հնարավորությունը։

21. Բոլոր խաղաղասեր ուժերի միավորումն ու ակտիվ գործողությունները նոր համաշխարհային պատերազմի կանխման անհրաժեշտ պայմանն են։

22. Խաղաղ գոյակցության սկզբունքը սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության անխախտ հիմքն է։

23. Խաղաղ գոյակցության և դասակարգային պայքարի ու ազգային-ազատագրական շարժման հարցերը արդի պայմաններում։

24. Ընդհանուր և լրիվ զինաթափման սովետական ծրագրի պատմական նշանակությունը։

25. Խաղաղությունը սոցիալիզմի հավատարիմ դաշնակիցն է։

26. Ազգային-ազատագրական ռևոլյուցիաները և իմպերիալիզմի գաղութային սիստեմի քայքայումը։

27. Արդի պայմաններում ազգային դեմոկրատիայի անկախ պետությունների գոյացման և ամրապնդման հնարավորությունները։

28. Դեմոկրատիայի համար պայքարը սոցիալիզմի համար պայքարի բաղկացուցիչ մասն է։



29. Ռևոլյուցիոն բոլոր ուժերի միավորումը իմպերիալիստական ճնշման ու շահագործման դեմ մղվող պայքարում։

30. Բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքը սոցիալիստական ռևոլյուցիայի գլխավոր շարժիչ ուժն է։

31. Բանվոր դասակարգի գործողությունների միասնությունը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարի վճռական պայմանն է։

32. Սոցիալիզմին խաղաղ կամ ոչ-խաղաղ ճանապարհով անցնելու կոնկրետ-պատմական պայմանների մասին։

33. Համաշխարհային կոմունիստական շարժումը մեր ժամանակի ամենաազդեցիկ քաղաքական ուժն է։

34. Պարտիական կյանքի լենինյան սկզբունքների խստիվ պահպանումը կոմունիստական պարտիաների գործունեության օրենքն է։

35. Բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարը և մասսաների կոմունիստական դաստիարակությունը։

36. Պայքար երկու ճակատում՝ ընդդեմ ռևիզիոնիզմի, որպես գլխավոր վտանգի, և ընդդեմ դոգմատիզմի ու աղանդավորության։

37. Սովետական Միության Կոմունիստական պարտիան համաշխարհային կոմունիստական շարժման ավանգարդն է։

# ԼՈՒՐԵՐ

## ժողովրդական դեմոկրատիայի երկրներից

Որոշ գիտական փորձերի ժամանակ պահանջվում է շատ արագ երևակել լուսանկարված պլյոնկաները։ Այս ուղղությամբ հետաքրքրական ուսումնասիրություններ են կատարվել ԳԴՌ-ում։ Բազմաթիվ փորձեր են կատարվել, որոնք ցույց են տվել, որ եթե այդ լուսանկարչական շերտի վրա ներգործում են ուլտրաձայնային տատանումներով, ապա երևակելու պրոցեսը զգալիորեն արագանում է, որը և նպաստում է գիտական փորձերի կատարմանը։



Հեղուկ նյութերը վերամղելու համար Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայում արտադրվում են շատ պարզ կառուցվածքի պոմպեր. բացի երեք պտուտակներից, այդ պոմպերն այլ շարժիչ մասեր չունեն։ Այս պոմպերն ունեն շատ բարձր արտադրողականություն։



Ամբողջ աշխարհին հայտնի է չինական վարպետների ձեռքի չափազանց նուրբ աշխատանքը։ Նրանք այնպիսի վարպետությամբ են ծաղիկներ պատրաստում, որ հնարավոր չէ արհեստական ծաղիկը տարբերել բնականից։ Այժմ ՉԺՌ-ի Շանհայ քաղաքի պլաստմասսային իրերի ֆաբրիկաներից մեկում ծաղիկներ են պատրաստում այնպիսի նյութերից, որոնք երկար ժամանակ արձակում են տվյալ ծաղկին բնորոշ բուրմունք։





Լեհաստանում ստեղծել են մի շատ պարզ կառուցվածքի գործիք, որի միջոցով նախապես կարելի է իմանալ, թե տվյալ նախագծվող շենքի մեջ տարվա տարբեր եղանակներին արևն ինչպես կթափանցի։ Գործիքն ունի մի կոր մաս, որի մեջ խրված է գնդասեղ։ Այդ կոր մասն այնպես է տեղադրված, որը համապատասխանում է ապագա շենքի դիրքին։ Այնպես է այդ ամբողջը հարմարեցված, որ գնդասեղի գլխիկը ճիշտ այն անկյան տակ է ստվեր գցում այդտեղ տեղադրված տվյալ ամսվա գրաֆիկի վրա, որպիսի ստվեր տարվա այդ եղանակին կգցեր նաև շենքը։



# ԳԻՏԵ՞Ք ԱՐԴՅՈՔ ՈՐ...

...Ամերիկայում մինչև անցյալ դարի 60-ական թվականները ճնճղուկներ չեն եղել։ Միայն անցյալ դարի երկրորդ կեսին են ճնճղուկներ Ամերիկա տարել Անգլիայից՝ թրթուրների դեմ պայքարելու համար։

...Մոծակները ևս ատամներ ունեն։ Միկրոսկոպիկ ուսումնասիրությունները ցույց են տվել, որ նրանք ունեն 22 ատամ։

...Ճապոնիայում աշակերտներին սովորեցնում են գրել երկու ձեռքով։

...Արտույտը արդեն 3 հարյուր մետր բարձրության վրա չի երևում, իսկ նրա երգի ձայնը լսվում է 6 հարյուր մետր բարձրությունից։

...Հավայան լեզվում կա միայն 6 բաղաձայն և 5 ձայնավոր։



Նշումների համար

Նշումների համար

СОДЕРЖАНИЕ

Стр.

МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



МЕТОДИЧЕСКАЯ ПОМОЩЬ АГИТАТОРАМ



КУЛЬТУРА И ИСКУССТВО



В ПОМОЩЬ АГИТАТОРАМ



СПРАВОЧНЫЙ ОТДЕЛ



Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Խմբագրության հասցեն—Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II Հարկ, 60-րդ սենյակ. Հեռախոս՝ 2—52—78։

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ղ. Լ. Շահարյան— *Ֆինանսները և սոցիալիստական շինարարությունը ՀՍՍՌ-ում 40 տարում,* գինը 33 կ., 117 էջ։

Գ. Վ. Կրամարենկո— *Ավտոմոբիլների տեխնիկական սպասարկումը,* գինը 1 ռ., 469 էջ։

Վ. Կոռոտկով, Վ. Մելքոնյան— *Գունավոր մետալուրգիայի զարգացումը Սովետական Հայաստանում,* գինը 13 կ. 87 էջ։

Վ. Ս. Պետրոսյան— *Շինարարության արժեքի իջեցումը,* գինը 22 կ., 88 էջ։

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 2 1961 г.

ՎՖ 00006 Պատվեր 45 Տպաքանակ 9150

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը՝ 8 կոպ.